ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԽԳ.

# ՀԱՅ ԲԴԵԱՇԽՔ

ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԴՐ. Յ. ՄԱՐԿԱՐՏԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԹՈՎՄԱՍ ԿԷՏԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԽԳ.

# ՀԱՅ ԲԴԵԱՇԽՔ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

# ՀԱՅ ԲԴԵԱՇԽՔ

## ՔՆՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ


ԴՐ. Յ. ՄԱՐԿԱՐՏԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԹՈՎՄԱՍ ԿԷՏԻԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ






ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1903.

# Ա Զ Դ

Խուզարկու-քննադատ մտաց համար՝ շատ հետաքրքրական, եւ հայկական պատմութեան ու բանասիրութեան նկատմամբ ալ՝ արտաքոյ կարգի ընտիր ու կարեւոր գրուածք մը հրատարակեց Դր. Մարկարտ 1901ին՝ յաջորդ անուամբ եւ անուան համազօր բովանդակութեամբ. “Պարսից աշխարհ, ըստ Ստոյն-Մովսէսի Խորենացւոյ Աշխարհագրութեան, հանդերձ պատմական-քննադատական մեկնութեամբ եւ պատմական ու տեղագրական յաւելուածներով[1]„, որուն վրայ խօսուած է ժամանակին “Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթին մէջ[2]:

Այս գիտնական մեծ հմտութեամբ գրուած սքանչելի երկին մէջ՝ գործքէն բոլորովին անկախ՝ զատ գլուխ մը, առանձին ճառ մը կայ՝ **Die armenischen Markgrafen** վերնագրով, որ գործքին 165–179 մեծադիր էջերը կը գրաւէ, բոլորովին նոր նիւթ մը: Դր. Մարկարտ այս՝ իւր թէեւ համառօտ, բայց շահեկան ուսումնասիրութեամբը՝ հայկական պատմութեան գրեթէ ընդ քողով ծածկուած մէկ անյայտ խորշը կը պեղէ, ի յայտ բերելով Հայ բդեաշխներուն ծագումն, անոնց դիրքն ու վիճակը եւն: Մենք պատշաճ դատեցինք այս կտորը լիակատար թարգմանութեամբ նախ “Հանդէս

---

1 **Erānšahr nach der Geographie des Ps. Moses Chorenaci.** Mit historisch-kritischem Commentar und historischen und topographischen Excursen von Dr. J. **Marquart**, Privatdozenten der alten Geschichte in Tübingen. Berlin, Weidmann. 1901, p. 358 4° [Abhdlgn. d. K. Ges. d. Wiss. zu Göttingen. Phil.-hist. Kl. N. F. Band III. 2.]

2 Հանդէս Ամսօրեայ, 1902, թ. 12, էջ 405–8:

Ամսօրեայի¹„ մէջ մեր ընթերցողներուն ծանօթացընել եւ ապա առանձին ալ ի լոյս հանել: Հարկ չկայ ըսելու թէ թարգմանութիւնս ամբողջական է եւ անփոփոխ. ի բաց առեալ պատշաճ² տեսնուած քանի մ'աննշան կտորներու կրճատումն կամ յաւելումը: Կ.

---

¹ Հմմտ. Հանդ. Ամս. 1903, թ. 1, էջ [illegible], թ. 4, էջ 114—119: — "Հանդէս Ամսօրեայի„ ընթերցողներուն անծանօթ մը չէ Դր. Մարկվարտ. հմմտ "Հանդէս„ 1896, էջ 346-7: — Փուստոս բիւզանդացի. [illegible] Ամս. 1897. էջ 5-9, 183—86): – Հազարապետը (Հանդ. 1898, էջ 316-320 եւն):




# [illegible] Ր Ե Ա Շ Խ Ք

Հայ բղեաշխններուն էութեան եւ բռնած դրից վրայ այնչափ անճիշդ բաներ գրուած են, որ առիթս կը գործածեմ՝ կարելի եղածին չափ համառօտ, անգամ՛ մը խնդիրը ճիշդ մեկնել։ — Ագաթանգեղոս էջ 650, 12 եւն (Լանգլուա՝ Ա. 187. Լազարդ էջ 83, 91 եւն.) Ս. Գրիգոր Լուսաւորչէն, անոր Ռստակէս որդիէն եւ Աղբիանոսէն վերջը՝ Տրդատ Թագաւորին հետ կայսեր գացող մեծամեծներուն մէջ կը դասէ "զչորեսին զահերէցսն, որ բղեաշխքն կոչին՝

Զառաջին սահմանակալն՝ ի Նոր Շիրական կողմանէն,

Երկրորդ սահմանակալն՝ յԱսորեստանեաց կողմանէն,

Երրորդն՝ յԱրուեստական կողմանէն,

Չորրորդն՝ ի Մաքթաց կողմանէն։"

Ապա կը յաջորդեն՝

5. զմեծ իշխանն Անգեղ տան եւ

6. զԹագադիր ասպետն եւ

7. զսպարապետն մեծ, եւն։

Արուեստական գրչի մը մեկնութիւնն է, որուն միտքն է ինկեր Հայերէն "արուեստական" բառը: Ուստի պէտք է Արուաստան կարդալ, այսինքն՝ Մծբնայ կողմերը: Բացատրութեան եղանակէն կը հետեւի, որ այս իշխաններն ոչ թէ այն երկիրներուն մէջ, այլ այն երկիրներուն մօտերը կամ սահմաններուն վրայ կ'իշխէին:

Ուրիշ տեղ մը՝ (էջ 596, 21 եւն. Լանգլուա Ա. 170. Լագարդ էջ 68, 44 եւն,) այն դեսպանները կը յիշուին, որոնք Սուրբ Գրիգորի ուղեկից եղան, երբ Կեսարիա ձեռնադրուելու կ'երթար: Հոս դասակարգութիւնն ուրիշ տեսակ է, եւ կ'երեւայ թէ չորս սահմանակալները հոս կը պակսին.

"Առաջին իշխանն Անգեղ տան,

Երկրորդ իշխանն Աղձնեաց՝ որ բդեաշխն մեծ[1],

Երրորդ իշխանն մարդպետութեան[2] իշխանութեանն,

---

[1] Յուն. ὁ τῆς κομιτατησίας.

[2] Յուն. ὁ τρίτος ἄρχων ἐπὶ τῆς ἐξουσίας πατρίκιος λεγόμενος. Հոս մարդպետին համազօրը կը պակսի. πατρίκιος կը համապատասխանէ մարդպետին հայր տիտղոսին առ Փաւստ. Բիւզ.: Ուրեմն կարդալու է ἐπὶ τῆς (εὐνουχικῆς կամ κουβικλαρικῆς) ἐξουσίας π. λ. — Երրորդ իշխանն մարդպետութեան իշխանութեան, (որում հայր կոչէին): Համմտ. Փաւստոս Գ. ժե. էջ 45, ժը. էջ 46 եւն: Ղազար էջ 144 յունին πατρίκιοςը ներքինիութեան չ'առնուր եւ կ'երեւայ թէ զայն Ամիանոսի vitaxa — βιτάξηςին հետ կ'ուզէ բանազբօսութեամբ նոյնացընել: Բայց զարմանալի կերպով մէկ

Չորրորդ իշխանն Թագակայ՝ իշխանութեանն ասպետութեան,

Հինգերորդ իշխանն սպարապետութեան՝ զօրավար Հայոց աշխարհին,

Վեցերորդ իշխանն Կորդուխաց[1] աշխարհին,

Եօթներորդ իշխանն Ծոփաց[2] աշխարհին,

Ութերորդ իշխանն Գարգարացւոց աշխարհին, որ միւս անուանեալ բդեաշխն[3] եւն։

Անգեղ-տան իշխանին պաշտօնն էր Անգղ դղեակին եւ մէկալ Թագաւորական դղեականերուն գանձերը՝ որոնք Անգղ եւ Ծոփք կը գըտ-

---

չի գտներ՝ որ յուն. բնագրին մէջ κομιτατησίας եւ κομιτατήσιος, իսկ հայերէնին մէջ բդեշխի երկու անգամ ճիշդ համապատասխանող տեղը կը գտնուին, եւ տարօրինակ կերպով կը դնէ κομιτατησίας = բդեշխութեան։ — Ձեռագրաց Κωμητῶνին տեղը՝ որ հայերէն բնագրին Մոկաց բառին կը համապատասխանէ եւ ըստ այսմ Μωκιτῶν ուղղուելու է, Լագարդ բնագրին մէջ κομίτων կը գրէ, բայց անոր տեղ էջ 144 մեր Բիւզանդացւոյն վերը կ'ուզէ փաթթել Հեկատէոսի Μυκῶνը (Հմմտ. Ges. Abh. 160), որ հաւանականագոյնս Մոզան անապատն է։

1 Կորդուխաց = յուն. Κορδουιτῶν փոխանակ բուն հայերէն Կորդուաց։ Այսկէ կը հետեւի թէ ցանկը յունարէնէ թարգմանուած է։

2 Յուն. զանց առած։ — Ծոփք գրութիւնը՝ փոխանակ Ծոփքի, նոյնպէս յունական բնագիր մը կ'ենթադրէ. վասն զի ով երկբարբառը միայն յուն. ω-ին տառադարձութիւնն է։

3 Յուն. ὁ ἕβδομος ἄρχων ὁ ἕτερος κομιτατήσιος. Ուրեմն κομιτατήσιος = բդեշխ։ Կ'երեւայ թէ յունարէնն այսպէս կարդալու է. ὁ ἕβδομος ὄρχων (τῆς Σωφανηνῶν χώρας. ὁ ὄγδοος ἄρχων τῆς Γωγαρηνῶν χώρας) ὁ ἕτερος κομιτατήσιος.

նուէին, պահպանել. «եւ բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն։» Արշակ Թագաւորին ժամանակը՝ այս պաշտօնը մարդպետութեան հետ կապուած էր, անոր համար մարդպետը՝ նախարարներուն մէջ առաջին պատիւն ունէր (Փաւստ. Բիւզ. Ե. Է. էջ 206)։[1] Փաւստոսին ըսածը՝ թէ այս երկու պաշտօնները շատոնց իրարու հետ կապուած էին, կ'երեւայ թէ Ագաթանգեղոս կը ջրէ, որ յատկապէս մարդպետն երրորդ տեղը կը յիշէ։ Իսկ եթէ ենթադրենք, որ գուցէ այժմեան բնագրին մէջ կարգը խանգարուած է[2], Աղձնեաց իշխանը սխալ տեղ մը մտեր է, եւ եթէ զինքը սպարապետէն ետքը դնենք՝ հետեւեալ շարքը կ'ունենանք.

---

1 Փաւստոսի խօսքերն ասոնք են. «Իսկ Դրաստամատն ներքինին, որ յաւուրս Տիրանայ Թագաւորին Հայոց, լեալ էր իշխան տան կոստոսին (Անգեղ) եւ ἐπίτροπος (բառական πεπιστευμένος, հաւատարիմ) գանձուցն Անգեղ բերդին, եւ ամենայն բերդացն արքունի՝ որ ի կողմանս յայնս, սոյնպէս եւ յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ, եւ բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն։ Եւ քանզի այս գործակալութիւն (Նախարարութիւն Անգեղ-տան) եւ ճորդղեփունիան, որում հայրն կոչէին ներքինեաց՝ գործ (ընթերցիր գործ մի) լեալ էր ի բնէ ժամանակաց ի թագաւորութեան Արշակունոյ —. եւ զայս Դրաստամատն ներքինի, զիշխանն զԱնգեղ-տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից» եւն։

2 Այս ցանկը՝ ինչպէս տեսանք (էջ 9, ծան. 1) յունական բնագրէ մը թարգմանուած է։ Այժմեան յունական բնագրին մէջ (էջ 68, 45 Լագարդ) խառնակութիւն կայ, վասն զի Ծոփաց իշխանը դուրս ինկած է եւ երկրորդ Բդեաշխին (κομιτατήσιος) քով՝ անոր աշխարհին յիշատակութիւնն ալ (ὁ τῆς Γωγαρηνῶν χώρας) նոյնպէս դուրս ձգուած է։

**Ա.**

1. Սահմանակալն ի Նոր Շիրական կողմանէն.
2, Սահմանակալն յԱսորեստանեաց կողմանէն.
3. Սահմանակալն յԱրուաստան կողմանէն.
4. Սահմանակալն ի Մասքթաց կողմանէն.

5. Մեծ իշխանն Անգեղտան.
6. Թագադիր Ասպետն.
7. Սպարապետն մեծ։

**Բ.**

1. Իշխանն Անգեղ-տան, իշխանն Մարդպետութեան իշխանութեանն.
2. Իշխանն Թագակապ՝ իշխանութեանն Ասպետութեան.
3. Իշխանն Սպարապետութեան, զօրավար Հայոց աշխարհին.[1]

4. Իշխանն Աղձնեաց՝ որ բդեաշխն մեծ.
5. Իշխանն Կորդուաց աշխարհին.
6. Իշխանն Ծովփաց աշխարհին.
7. Իշխանն Գուգարաց աշխարհին՝ որ մեծ անուանեալ բդեաշխն։

Անկէ ետքը՝ երկու ցանկին մէջ ալ հաւասարապէս Մոկաց, Սիւնեաց եւ Ռշտունեաց իշխանները կը յիշուին։

---

1 Նոյն կարգը նաեւ այն իշխաններուն ցանկին մէջ պահուած է, որոնք՝ զՆերսէս ձեռնադրութեան համար Կեսարիա տարած էին (Փաւստ. Դ. դ. էջ 71)։

1. «Զհայր մեծ իշխանն մարդպետութեան,
2. զԲագարատ մեծ իշխանն ասպ[ետութեան,
3. զՎասակ մեծ իշխանն սպ]արապետութեան» եւն։

Բնագիրը պակասաւոր է եւ փոխանակ «զԲագարատ մեծ իշխանն ասպարապետութեան» կարդալու է . . . «զԲ. մեծ իշխանն ասպ[ետութեան եւ զՎասակ մեծ իշխանն սպ]արապետութեան»։

Նոյնպէս այն հրեշտակութեան ժամանակը՝ որ Շահակայ ձեռնադրութեան ընկերացաւ (Փաւստ. Գ. ժե. էջ 45), դրուած է՝ «իշխանն մարդպետութեան, որում անուն հայր կոչէր», առաջին տեղը։

Դժուարին է կարծել՝ թէ ասով Նախնական բնագիրը մեր առջեւն ունենանք եւ Բ ցանկին խումբը՝ 5—7 Ա. խմբին հետ համաձայն ըլլայ։ Մեր յառաջ բերած առաջին տեղէն կարելի է արդէն հետեւցընել՝ թէ միայն չորս բդեաշխ կայ։ Անոր հետ կապակցութիւն ունի Փաւստոսի Բիւզ. Գ. Ը. էջ 21. հետեւեալ կտորը. "Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխն. որ էր մի ի չորից, զահերէց բարձրերէց տաճարին արքունի:" Ինչպէս հոս, նմանապէս առ Ագաթանգեղ. էջ 650 զահերէց բացատրութիւնը կը գործածուի։

Լագարդ երկրորդ իշխանահամարին մէջ չորս սահմանակալք չկարենալով գտնել՝ անոնց քննելու, կը վճռէ թէ վերոյիշեալ երկու ցանկերն այլեւայլ ժամանակներէ են։ Այն նահանգները՝ որոնց գլխաւորները սահմանակալք էին, հաւանականագոյնս կորսուած են երկրորդ իշխանահամարին արժէք ունեցած ժամանակը։ (Ագաթ. էջ 162։) Եթէ Լագարդ քիչ մ’աւելի Փաւստ. Բիւզանդացւով զբաղած ըլլար, եւ ասոր քով գտնուած ուղեկից նախարարաց նման ցանկին[1] ի մերձուստ ծանօթացած

1 Գ. ԺԲ. էջ 29. 12 իշխան կը համրուի, գլխաւորը Վաղարշ հազարապետն է։ (Բնագրին սկիզբն եղծած է), — Գ. ԺԴ. էջ 38. 4 իշխան, որոնց գլխաւորն է Ա. Ա., իշխանն Սահառունեաց, (զոմն, τηνά կամ τὸν δεῖνα, որմէ Վենետացիք եւ Լաուէր Զոմն յատուկ անունը շինեցին. նոյնպէս Գ. ԺԲ. էջ 29 միայն Սահառունեաց իշխանը գիտ-

ըլլար, այն ատեն այսպիսի դատաստան մը չէր կրնար։ Գելցէր[1] իրաւամբ կը ժխտէ Լազարդի համած հետեւութիւնն եւ կ'ըսէ, թէ "Թերեւս սահմանակալները ժամանակ ունեցած չէին գամ-բաց աշխարհը դիւանագիտական երթեւեկու-թիւնը մէկտեղ ընելու,, Այս ենթադրութիւնն ալ ամենայն մասամբ ուղիղ չէ։ Ըստ ինքեան բդեաշխներէն երկուքը յիշատակուած են, բայց միայն թէ բացայայտ իբր "սահմանակալ,, չեն նշակուած։

Գուգարաց[2] բդեշխին՝ Մասքթաց կողման բդեշխին հետ նոյն ըլլալուն վրայ ամենեւին տարակոյս չկայ։ Գուգարք՝ յուն. Γωγαρηνή ինչպէս եւ Χορζηνή (կարդա Χο(λα)ρζηνή = Կաղարջք) ու παρώρεια τοῦ Παρυάδρου (լեռ-նագաւառը) Վրացիներէն յափշտակուած էին ժամանակաւ (Ստրաբ. ια 14, 5 էջ 528)։ Կաղարջք հայկական յետնագոյն բաժաման ատեն՝ Գուգարաց նահանգին 9 գաւառ-

մամբ բոլոր յիշուած իշխաններուն մէջ անանուն կը մնայ)։ — Գ. ԺԴ. էջ 44, չորս իշխանք անուամբ յիշուած, որոնց գլուխն է ստորագրեալը, եւ 10 անանուն։ — Գ. ԺԵ. էջ 45, անուամբ յառաջ բերուած երկու իշխան, որոնց առաջինն է հայր մարդպետը, եւ 10 անանուն։ — Դ. Ե. էջ 79. — Դ. Ժա. էջ 103. 10 յանուանէ յիշուած իշխանք եւ անոնց գլուխը եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս. Դ. Ջ. էջ 71. 9 յականէ յանուանէ յառաջ բերուած իշխանք, որոնց գլխաւորն է հայր մարդպետը (բնագիրը բաց ունի, տ. վերը էջ 11, ծան. 1)։

1 Die Anfänge der armenischen Kirche. Berichte der Sächs. Ges. d. Wiss. 1895 p. 166.

2 Գուգարացւոց կ'երեւայ թէ յունական բնագրին մէկ օրինակին հետ կապակցութիւն ունի, Γαργαρέων փոխանակ Γωγαρηνῶν.

ներէն մէկը կը կազմէր եւ հիւսիսային կողմանէ իրեն սահմանակից ունէր վրական Մցխէթի նահանգը՝ Մասքթաց հին երկիրը, որ յետոյ Սամցխէ կոչուեցաւ[1]։ Լագարդ (էջ 146) իրաւունք կ'ունենայ ըստ այսմ երբ Ագաթանգեղոսի Մասքիթքին մէջ Մասքութք կը տեսնէ, մինչդեռ յոյն թարգմանիչը սխալմամբ Փ. Բիւզանդացւոյ Մազքութքին հաւասար կը դասէ եւ Հոնք կը համարի[2]։ “Սահմանակալ ի Մասքթաց կողմանէն„ բացատրութիւնը՝ ամենայն մասամբ կը համապատասխանէ բդեաշխ Գուգարաց բացատրութեան։ Ամենուն ծանօթ են սպանիական, դանիական եւ գերմանական սահմանք։ Ե. դարուն բդեաշխին Գուգարացւոց (Ճիշդ այսպէս Մովս. Խոր. էջ 258) Աշուշայ, որուն կնիքը հասած է մեզի՝ ACJOYCAC ΠΙΤΙΑΞΗC IBIPΩN KAPXHΔΩN(?) մակագրով, շատ նշանաւոր դեր մը [illegible]աղացած է։ Ղազար Փարպ. (տպ. Վեն. 1891, էջ 149, 165, 177, 191, 364—366 եւն.) միշտ բդեշխն Վրաց տիտղոսը կու տայ անոր. ընդհակառակն Կորիւն՝ Երանելւոյն Մաշտոցի Վարքին մէջ (տպ. Վեն. 1833, էջ 20) միայն իշխան Տաշրացւոց (այսինքն՝ Տաշիր, Գուգարաց գաւառի մը) կ'անուանէ։

---

[1] Վախուշտ, Description géographique de la Géorgie trad. par Brosset էջ 75, 81.

[2] Ագաթանգեղոս հրտ. Լագարդ, էջ 83, 93. ἀπὸ τῶν Μασαχούτων Οὔννων μερῶν. Ասոր վրայ մանրամասն ուրիշ տեղ կը խօսիմ։

Նմանապէս Աղձնեաց բդեշխին՝ Արուաստանի կողման սահմանակալին հետ նոյնութիւնը յայտ յանդիման է։ Արուաստան ըսելով հասկընալու ենք արաբական սահմանագաւառը (Bēϑ ʿAraβāje) Մծբին մայրաքաղաքով, որ 297ի խաղաղութենէն ի վեր ուղղակի հռոմէական իշխանութեան տակ էր։

Մեծ նշանակութիւն ունի նաեւ Փաւստոսի (Դ. ծա. էջ 159. Ե. ը—ժթ.) նախարարաց Արշակ Թագաւորէն հեռանալուն եւ Մուշեղ սպարապետին ձեռօք վերստին նուաճուելուն վրայ տուած տեղեկութիւնը։ Առաջնոյն մէջ կը կարդանք. "Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեաշխն Աղձնեաց, եւ Նոր Շիրական բդեաշխն, եւ Մահկեր-տանն, եւ Նիհորականն, եւ Դասն (Դասընտրէին), եւ ամենայն նախարարութիւն Աղձնեաց, եւ զօրն եւ տունն տոհմին (= ոստան) Աղձնեաց[1] կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ, եւ չոգան կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ[2]. եւ պարիսպ ածէին ի Հայոց կուսէ, որ Զորայն[3] կոչեն, դրունս դնէին. եւ զատուցին զերեանց աշխարհն ի Հայոց։ Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, եւ

---

1 Այս ܐܪܙܘܢ, ܐܪܙܢܘܢ կամ ܐܪܙܢܘܢ, ܐܪܙܢ, ܐܪܙܘܢ կը գտնուի 410էն սկսեալ՝ իբր առանձին եպիսկոպոսութիւն, ինչպէս եւ Արձն ZDMG. 43, 395, 4. 396, 10. 403, 8.

2 Մարքուարթ Ērānšahr. էջ 24։

3 Հմմտ. Սեբէոս էջ 108 [Ղեւոնդ 26. տես. Զորայոյ]։ Հիւբշման՝ Zur Gesch. Armeniens und der ersten Kriege der Araber p. 15.

յետ սորա Ձորայ[1] գաւառին տէրն, եւ Կողբայ գաւառին տէրն, եւ ընդ նոսա Գարդմանաձորոյ տէրն։ Եւ որք մօտ էին ի նոսա կողմն այնր ձեռին, որ շուրջ էին զնոքօք, միահաղոյն ապստամբեցին ի Թագաւորէն Հայոց Արշակայ. եւ՝ չոգան գնացին առաջի Թագաւորին Պարսից Շապհոյ։

Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ եւ ամուր գաւառն Տմորեաց, եւ ամուր աշխարհն Կորդեաց. ապա եւ տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի Թագաւորին Պարսից։

Յետ այսորիկ ապստամբեաց ի Թագաւորէն Հայոց եւ ձեռին իշխանութեանն տան Հայոց Թագաւորին, որ էր զԱտրպատական աշխարհաւն, յետս եկաց ի Թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց. յետս եկաց յարքայէն Հայոց, եւ աշխարհն կազմից եթող զարքայն Հայոց. եւ գնաց Սաղամուտ տէրն Անձաւեայ, եւ ընդ նմա իշխանն մեծի Ծոփաց. եւ գնացին առ Թագաւորն Յունաց։" Վերստին նուաճուած երկիրներու կամ գաւառներու անուններէն՝ աւելի պայծառ կը տեսնուի իւրաքանչիւր նախարարներուն իրարու նկատմամբ բռնած փոխադարձ դիրքը։ Նախ եւ առաջ կը յիշուի "զտուն Թագաւորին Հայոց, որ յԱտրպատականին էր," զոր Շապուհ Թագաւորը Հայոց Արշակ արքային պարգեւ տուած էր,[2] յետոյ Նոր Շիրական,

---

[1] Ձորը Գուգարք նահանգին մէջ կ'իյնայ, եւ վերջէն Կողբի եւնի պէս Վրաց կը վերաբերէր։

[2] Փաւստ. Դ. ծղ. էջ 224. "Յայնմ ժամանակի

վերջէն Կորդուք, Կորդիք, Ցմորիք եւ Մարաց կողմերը, ուստի այնպիսի երկիրներ, զորոնք Պարսիկները գրաւած էին։ Ապա կը յաջորդէ Արձախ գաւառն եւ Աղուանից անցած՝ Ուտի, Շակաշէն, Գարդմանայ-ձորն, Գողթ եւն գաւառները, ինչպէս նաեւ Պարսք (Πάρσιοι) փայտակարանին։ Ցայտնի կը տեսնուի այս ամէն գաւառներէն՝ թէ Աղուանից թագաւորը նուաճած էր։ Ասոնց կը յաջորդէ Վրաց թագաւորին պարտութիւնն եւ Փառաւազեան վրացի արքունական ցեղին խաչումը, նմանապէս Գուգարաց բդեշխին բռնումը ու սպանումը, որ յայտնապէս Վրաց կողմն անցած էր։ Այս շարքը կը փակէ Աղձնեաց բդեշխին գերութիւնն եւ Մեծ Ծոփաց, Անգեղ-տան, եւ Անձտայ նուաճումը, որոնք ի Հնուց Հռոմէական իշխանութեան տակ էին։

Պէտք ենք ստոյգ համարիլ, թէ նաեւ Մարք՝ Նոր-Շիրականի բդեշխին տակ էին, գուցէ նաեւ Ցմորիք,[1] Կորդիք եւ Կորդուք

կոչէր առ ինքն Շապուհ արքայն Պարսից զԹագաւորն Հայոց զԱրշակ. եւ մեծարեցաւ ի նմանէ բազում պատուով եւ մեծաւ փառօք, բազում գանձու ոսկւով եւ արծաթով. ամենայն մեծութեամբ թագաւորութեան։ Եւ իբրեւ զեղբայր որպէս զորդի գրգեալ եղեւ ի նմանէ, եւ երկրորդական զեծ փառսն տայր նմա յԱտրպատական աշխարհին։„ Անշուշտ խնդիրը՝ սատաններուն վրայ է, ինչպէս որ Հայ թագաւորները Հռոմայեցւոց երկրին մէջ ալ ունէին։

1 Ստրաբ. ԺԱ գլ. Ժ. էջ 528 Ταμωνῖτιν, որ կարդալու է Ταμωρῖτιν. Ταρωνῖτιν ուղղագրութեան դէմ էր դը Լագարդ, Ges. Abh. 46 N. 6. Համմտ. Նորերս Ցոմաշեկի Սասունը, էջ 9 (SBWA. Հտ. 133, 1895 Թ. IV) Թրգմ. Հ.

գաւառներն ալ. իսկ Գուգարաց բդեաշխը՝ Ջակաշէն, Ուտի, Գարդման եւն սահմանակից գաւառներուն վրայ կը հսկէր։ Ամէնէն դժուարինն է Ասորեստանեաց կողման բդեշխին տեղը ճիշդ որոշել։ Պարսկաստանի վերաբերող Ասորեստանի վրայ (Ադիաբենէ՝ Արբելա մայրաքաղքով եւ Նինուէի շրջակայքը) չի կրնար մտածուիլ, վասն զի ասիկա Նոր Շիրականի վերաբերող Մահկեր-տուն եւ Դասն սահմաններուն ճիշդ հարաւային կամ հարաւային-արեւելեան կողմն էր, ուստի Նոր Շիրականի բդեշխին իշխանութեան տակ կ'իյնար։ Նոյնպէս եկեղեցական տեսակէտով՝ Bēϑ Māhqert (Մահկերտուն) եւ Dasēn (Դասն) թեմերը, ինչպէս նաեւ Ռէմմոնին եւ [illegible] ([illegible][ܝ], [illegible] չստուգուած թեմերը Ḥeδaijaβ-Arbēlի մետրապոլտին տակն էին, իսկ Bēϑ Quardū (Կորդուք), Bēϑ Zaβδē (Ծաւդեայք), Bēϑ Reḥīmē եւ Moksajē (Մոկք) Մծբնայ կը վերաբերէին։ Բայց եթէ վերոյիշեալ (էջ 11) երկու ցանկերն իրարու հետ համեմատենք՝ յայտնապէս կը տեսնենք, որ Կորդուաց իշխանը՝ Նոր Շիրականի բդեաշխին տեղը բռնած է, կամ անոր համար՝ որ ասիկա անձամբ չէր կրնար երթալ եւ

---

Բ. Վ. Պիլէզիկճեան, “Ազգ. Մատենադարան, ԻԱ. Վիեննա 1896, էջ 11։ Սուտն Մովս. Խոր. Բ. ծգ. Ցմորիքը Կորդուաց հետ հաւասար կը դնէ. Հմմտ. Բ. ծգ. Գ. ժե։ Եղիշէ առ Լանգլուա, Collection II 214. Ցմորիք եւ Կորդիք։ Ա- Ստոյն Յեսուայ Սիւնակեցի ԳԼ. ԻԲ. ԻԴ. էջ 18, 1, 19 Հրտ. W. Wright, [illegible] կ'անուանուին։

կամ վասն զի Կորդուաց իշխանը՝ միանգամայն Նոր Շիրականի բդեաշխն էր։ Այս պարագային մէջ անհրաժեշտաբար կը հետեւի որ Ծոփաց իշխանն ալ — ինք զինքս զգուշութեամբ բացատրելու համար — «յԱսորեստանեաց կողմանէն» բդեաշխին իբր փոխանորդ՝ մեծամեծաց ուղեկցութեան մասնակցեցաւ։ Հիմայ ամէն բանէ յառաջ խնդիրն այն է՝ թէ հոս ո՞ր Ծոփքն իմանալու ենք. Եփրատայ քով եղած արեւմտեա՞նը թէ Մեծ Ծոփք ըսուած արեւելեանը՝ Նփրկերտ (Martyropolis) մայրաքաղաքով։ Այս խնդիրս որոշելու համար՝ լաւագոյնն է մեզի կռուան բռնել Ներսեհի խաղաղութեան դաշինքին ենթադրած քաղաքական յարաբերութիւնները. այս դաշնադրութիւնը շատ մօտ է ժամանակաւ Ագաթանգեղեայ յիշած հրեշտակութեան։ 297ին արքայից արքան ստիպուեցաւ հաւանիլ, որ (Հայաստանի վերաբերող) Անգեղ-տան Նախարարութիւնը Ծոփաց հետ, իսկ Արծն Կորդուաց եւ Ծաւդէից (Zabdikene) հետ հռոմէական պետութենէն անձկագոյնս կախում ունենան։[1] Սակայն այսու հանդերձ՝ անոնք Հայոց թագաւորութեան վերաբերելէ չդադրեցան։ Բա-

---

1 Պետր. Պատրիկ՝ Հատակոտոր 14 առ Դինդորֆի Hist. Gr. min. I 433, 20–23։ *ἦν δὲ τὰ κεφάλαια τῆς πρεσβείας ταῦτα, ὥστε κατὰ τὸ ἀνατολικὸν κλίμα τὴν ᾿Ιντηληνὴν* (ընթերցիր *᾿Ιγγηληνὴν*) *μετὰ Σωφηνῆς καὶ Ἀρζανηνὴν μετὰ Καρδουηνῶν καὶ Ζαβδικηνῆς ῾Ρωμαίους ἔχειν.*

ցատրութեանս այս ըմբռնումէն կը հետեւի թէ
Կորդուք եւ Ծաւդեայք (Ծօդէք) Արծնէն կա-
խում ունէին, եւ այս երեք գաւառաց իրարու
հետ անձուկ կապուած ըլլալը յայտնի է նաեւ
եկեղեցական այն բաժանումէն, որ հիմնուած
է Յովհաննոսի խաղաղութեան սահմաններուն
նկատմամբ ըրած տրամադրութեանց վրայ։ Այս
բաժանման համաձայն՝ Կորդուք եւ Ծաւդեայք
թեմերը, ինչպէս եւ Արծն Մծբնայ մետրա-
պոլտութեան կը վերաբերէին։ Յայտնապէս
Կորդուաց եւ Ծաւդէից սատրապներն Աղձնեաց
բդեշխին տակն էին։ Նման յարաբերութիւն
մ'ալ պէտք է ենթադրել Անգեղ-տան եւ
Ծոփաց միջեւ։ *Անգեղ-տունը* (Ingilene) հին
Անգղ բերդով (ասոր. Aggēl) միասին կը հա-
մապատասխանէ յետնագոյն ժամանակի Չորրորդ
Հայոց Դէգիք ըսուած գաւառին — զոր Գէորգ
Կիպրացին 960 κλίμα Διγησινῆς[1] կ'անուանէ —
ինչպէս Կիպերտ լաւ միտ դրած է։ Անգեղ-
տան կառավարն էր *Հայր մարդպետը*, որ
Մեծ Ծոփաց[2] Բնաբեղ բերդին գանձերուն
վրայ ալ կը հսկէր։ Ուստի կ'երեւայ թէ Մեծ
Ծոփքն այն դաշնագրութեան մէջ Անգեղ տան
ստորակարգ մաս համարուած է։ Հոս Ծոփք
ըսելով՝ միայն արեւմտեանը՝ Եփրատայ վրայինը
կրնայ հասկըցուիլ,[3] որ ուղղակի Հռոմէական պե-

---

1 Հ. Կիպերտ՝ Monatsber. der Berl. Akad. 1873, p. 198. Հմմտ. Գելցեր՝ Georgius Cyprius p. 180։

2 Հ. Գելցեր՝ Georgius Cyprius p. 161/2.

3 Հմմտ. Կիպերտ՝ անդ էջ 200։

տութեան սահմանակից էր եւ անկէ ետքը՝ միշտ Հռոմայեցւոց ազդեցութեան տակն էր։ Այս գաւառը՝ երբեմն պարզապէս Ծոփք կ՚ըսուի — այսպէս Ղազար Փարպ. էջ 205, 532[1] եւ Սուտ Մովս. Խոր. Աշխարհագրութիւն հրտ. Սուքրեանի էջ 30, 15 — երբեմն Ծոփք Շահեայ (սեռ. Ծոփաց Շահէի) Փաւստ. Գ. Թ. էջ 21, Շահունի Ծոփք Փաւստ. Գ. ԺԲ. էջ 29 կամ Ծոփք Շահունոց Փաւստ. Դ. ԻԴ. էջ 146, երբեմն ալ միւս Ծոփք Փաւստ. Դ. Դ. էջ 73։ Հայոց թագաւորութեան բաժնուելէն վերջը՝ հայկական հարաւային հինգ սատրապութիւնները — որոնց մէջ նաեւ Τζοφηνή = Ծոփք Շահունի — հռոմէական իշխանութեան տակ ինկան, բայց իրենց բնիկ իշխանները պահեցին։ Անկէ ետքը՝ երկու պետութեանց սահմանը կը կազմէր Նիմփիոս կամ Քաղիրթ։ 536ին Յուստինիանոս սատրապները վերցուց եւ հինգ սատրապութիւններէն Չորրորդ Հայք[2] նահանգը կազմեց։ Ս. Մարտէնի՝ Սուտ Մով. Խոր. Աշխարհագրութեան բնագրին մէջ՝ (Mém. sur l'Arménie II 360) Ծոփք՝ Շաղախ (որ թրքերէն բառ է شاه طاغ թագաւորական լեռ) արդի վերադիրն առած է, որ հայ. Շահունի կամ Շահեայ = “Թագաւորական„ բառին թարգմանութիւնն է։ Ծոփք Շահունի կը տարածուէր նաեւ Արածանւոյ հիւսիսային մէկ

---

1 Հմմտ. Գելցեր՝ Georg. Cypr., p. XLIX s.

2 Պրոկոպ. de aedif III. 1. 3. Justiniani novell XXXI. 3. Հմմտ. Գելցեր՝ Georg Cypr. XLVI ss.

մասին վրայ եւ Խոզանի (այժմ Xozāt) եւ Չմշկածակի[1] քաղաքներն ալ կը պարփակէր։

Ուստի տարակոյս չի կրնար վերցընել, թէ Ագաթանգեղեայ զմեզ զբաղեցընող դեսպանութեան ցուցակին մէջ Ծոփաց երկրի իշխանն է Ծոփք Շահունոց իշխանը. Ծոփաց իշխանը կամ յԱսորեստանեաց կողմանէն բդեշխին փոխանորդն է կամ նոյն իսկ ինքը նոյն անձն է։ Այս բդեշխին իշխանութեան տակ եղած երկիրներն են Ծոփք Շահունի, Անգեղ-տուն, Ծոփք մեծ եւ Անձտայ ('Ανζητηνή) սատրապութիւնը։ Ասորեստանեայք (եւ ոչ Ասորեստան) բացատրութեան ընտրութիւնն առանց նշանակութեան չէ։ Ասիկա բնականապէս այստեղ բուն Ասորեստան չի կրնար նշանակել, այլ անշուշտ այն իմաստով գործածուեր է, ինչ իմաստով որ Կորեան Ասորիքը՝ (հրտ. վեն. 1833, էջ 9, 10.) որ Ամիդն եւ Եդեսիան ալ կը բովանդակէ իր մէջը. ուստի էապէս Ասորւոց Միջագետքին կը համապատասխանէ։ Յունարէնէ եղած թարգմանութեան մը մէջ Ասորեստանեայք ձեւին վրայ՝ փոխանակ Ասորիքի, պէտք չէ զարմանալ, պատմական տեսակէտով ամենեւին հաւանական չէ որ Ուռհայաստանի (Osroene) թագաւորութեան դէմ դրուած ըլլայ սահմանը։ Այս սահմանին ծագման վրայ յետագայ ըսելիքներէս հաւանական կ'երեւայ, որ նոյնը Սելեւկեանց դէմ դրուած

1 Գելցեր՝ Georg. Cypr., p. 172—174։

*էր, ուստի «Ասորեստանեայք»ը Սելեւկեանք հասկընալու է։*

*Հիմայ դիւրաւ կը մեկնուի Ամմիանոսի այն բազմաչարչար տեղը՝* 23.6.14, *ուր պարսկական նահանգները կը թուէ ըսելով.* Sunt autem in omni Perside hae regiones maximae, quas vitaxae id est magistri equitum curant, et reges et satrapae — nam minores plurimas recensere difficile est et superfluum — Assyria, Susiana, Media, Persis, Parthia etc.* *Բդեաշխի մ'իշխանութեան տակ միայն ամէնէն յառաջ յիշուած Ասորեստան նահանգը կար, մինչդեռ մէկալ նահանգները՝ մարզպաններէ* (satrapae) *եւ թագաւորներէ, այսինքն՝ բնիկ նախարարներէ* (šaϑrdārān ملوك الطوائف) *կամ թագաւորի տիտղոս կրող արքայորդիներէ կը կառավարուէին։*

*Զորս բդեաշխներուն ծագումը՝ Տիգրան Մեծէն է, ինչպէս Պղուտ. Ղուկ.* 21*էն կ'երեւայ.* *Βασιλεῖς δὲ πολλοὶ μὲν ἦσαν οἱ θεραπεύοντες αὐτόν, τέσσαρες δέ, οὓς ἀεὶ περὶ αὐτὸν εἶχεν ὥσπερ ὀπαδοὺς ἢ δορυφόρους, ἱππότῃ μὲν ελαύνοντι πεζοὺς παραθέοντας ἐν χιτωνίσκοις, καθημένῳ δὲ καὶ χρηματίζοντι περιεστῶτας ἐπηλλαγμέναις δὶ ἀλλήλων ταῖς*

* *Թրգմ. — Պարսկաստանի ամենամեծ նահանգներն ասոնք են. Ասորեստան, Շուշ, Մարաստան, Պարսք, Պարթեւաստան եւն, զորոնք բդեաշխք, այսինքն՝ ասպետներ, թագաւորներ եւ նախարարք կը կառավարեն. իսկ բազմաթիւ փոքր գաւառներն հաշուելը դժուար է եւ աւելորդ:*

χερσίν, ὅπερ ἐδόκει μάλιστα τῶν σχημάτων ἐξομολόγησις εἶναι δουλείας.* Հակառակ Հռոմէական չափազանցութեան՝ Հոս դիւրաւ կը նշմարուին դարձեալ չորս բդեաշխները։ Անտարակոյս գերմ. միջին դարեան ասպետներուն թագաւորաց թագադրութեան ժամանակ ասպանդակ բռնելն եւ ուրիշ պատուոյ պաշտօններ կատարելը՝ Հռոմայեցի պատմագրին նոյնպիսի բաներ մը պիտի երեւային։[1]

Տիգրան Մեծ՝ Տիգրան Առաջնոյն[2] որդին եւ Հաւանականագոյնս Արտաւազդ Ա. թագաւորին կրտսեր եղբայրը, որ Պարթեւաց քով պատանդ էր, Պարթեւաց ձեռքովը թագաւոր դրուելուն փոխարէն ստիպուած անոնց 70 վիճակ (Talgau) ձգեց. աս վիճակներուն մեծ բազմութիւնը զմեզ ենթադրութեանց դիմելու կը ստիպէ. թէ խնդիրն այն երկիրներուն վրայ է, զորոնք Տիգրանին նախորդները Հետզհետէ Ատրպատականի Մարերէն ու Վրացիներէն խլեցին. Նոյնպէս կը ստիպէ ենթադրել թէ Միհրդատ Մեծ՝ Արշակունեաց Հարստութեանց[3] առաջին

---

* Թարգմ. – Շատ թագաւորներ անոր (Տիգրանայ) կը ծառայէին, բայց անոնցմէ չորսը միշտ իւր քովն ունէր իբր ուղեկից կամ անձնապահ, որոնք թագաւորին ձիավարած ժամանակը՝ հետիոտն անոր կը հետեւէին ծիրանազգեաց, իսկ նստած եւ խորհուրդ ըրած ատենը՝ ձեռքերը խաչաձեւ կը դնէին, այս կեցուածքը ծառայութեան նշան էր:

1 Գուտշմիդ ալ (Geschichte Irans p. 85) վերի ծանօթութիւնը սխալ մեկնած է։

2 Ապպիան. Ասոր. 48։

3 Այս շատ կարեւոր եւ ստոյգ ապացուցուած

Թագաւորը, Հայոց Արտաւազդ Թագաւորին դէմ պատերազմ բացաւ՝ այս երկու ազգին խնդրանաց ու շահուն համար։ Նոյն ժամանակամիջոցին Աղուանից Թագաւորութիւնն ալ կազմուած պիտի ըլլայ, որ 26 այլալեզու ազգերէ կը բաղկանար, որոնց ամէն մէկն յառաջագոյն իւր իշխանն ունեցած էր։[1] Տիգրան գահ ելածին պէս՝ ետեւէ եղաւ այն կորուստներուն դիմացն ուրիշ կողմանէ փոխարէն գտնել։ Նախ եւ առաջ Ծոփաց Թագաւորութեան վրայ յարձակեցաւ եւ անոր տիրեց։ Այն ժամանակուան Արտանէս Թագաւորը՝ Զարիադրիսին յաջորդներէն մէկը, վար առնուեցաւ (95—93ի մէջերը Ն. Ք.)։ Յետոյ՝ Միհրդատ Բ. Մեծին (90 Ն. Ք.) մահուընէն վերջն Արշակունեաց տան մէջ ծագած[2] գահակալութեան կռիւները՝ Տիգրան իրեն յօգուտ գործածեց՝ Պարթեւաց պաշտպանութեան տակ եղող Վրացիներէն ու Մարերէն այն գաւառներն ետ առնելով, որոնցմէ հրաժարած էր։ Բայց ասով ալ գոհ չեղաւ, այլ Ատրպատականէն ուրիշ գաւառներ ալ յափշտակեց, ինչպէս Մեծ-Աղբակ (Ἀλβάκη) եւ նոյն իսկ այս երկիրն ասպատակելով՝ մինչեւ

---

խրոխտութիւնը՝ դրամներուն բոլորովին նոր դասաւորում մը կը պահանջէ, ինչպէս Սէյօ եւ ես 1896ին իմացանք։

1 Ստրաբ. ια 4, 6, էջ 503։ Հմմտ. Վ. Ֆաբրիկիոս Թէոփանէս Մետիլինեցի 191։

2 Պղուտ. Ղուկ. 36։ Հմմտ. իմ Beiträge zur Gesch. und Sage von Eran գրութիւնս, ZDMG. 49, 644 եւն։

Եկբատան՝ Արշակունեաց ամառանոցը յառաջացաւ։[1] Նոյնպէս Նինոսի եւ Արբեղայի շրջակայքն աւերեց, այսինքն՝ Ադիաբենէի թագաւորութիւնը, եւ ստիպեց Կորդուաց, Ադիաբենէի, Ատրպատականի, ինչպէս նաեւ Աղուանից եւ Վրաց թագաւորները՝ որ իր վերին իշխանութիւնը ճանչնան։[2] Պարթեւք ասոր դէմ ոչ թէ միայն չկրցան բան մ'ընել, այլ նոյն իսկ ստիպուեցան նոր թագաւորին ձգելու ամբողջ Միջագետքը՝ Ուռհայաստանի (Osroene) հարկատու իշխանութեան հետ միասին, եւ Տիգրանայ հետ դաշինք դնելու, որուն մէջ որոշ կերպով կ'երեւայ թէ "Արքայից արքայ" տիտղոսէն հրաժարեցան՝ նոյնը Տիգրանայ ձգելով։ Այսպէս գոնէ բեւեռագիր արձանագրութեանց 89—87 եւ 80 Ն. Ք. թուականէն մեզի յականէ յանուանէ Գոտարզ Ա. եւ Որոդ Ա. ծանօթ պարթեւ թագաւորներն իրենք զիրենք միայն թագաւոր կ'անուանեն, մինչդեռ Տիգրան "Արքայից արքայ" կ'անուանէր ինք զինքը։ Բայց ասով գործունեայ թագաւորին փառասիրութիւնը չգոհացաւ տակաւին. վերջին Սելեւկեանց իրարու դէմ ըրած արիւնահեղ կռիւներն իրեն դէպ ի Ասորիք եւ դաշտային Կիլիկիա ճամբայ բացին, այնպէս որ կրցաւ Ասիոյ թագաւորներուն թագը կապել (83 Ն. Ք.)։

---

1 Իսիդ. Քար. σταθμοί Παρθ. § 6 առ Կ. Միւլլէրի՝ Geogr. Gr. min. I 250.

2 Ստրաբ. ια 14, 15, էջ 532։ Ադիաբենացւոց, Աղուանից եւ Վրաց վրայ, Պլուտ. Ղուկ. 26։

Անտիոքի մէջ Βαγαδάτης[1] (հնպ. Baga-dāta) հին Սելեւկեանց պետութեան վրայ փոխարքայ դրուեցաւ,[2] այս դէպքին յիշատակը՝ հայ ժողովրդական զրոյցին մէջ ալ — Մար Աբասայ քով — պահուած է, որովհետեւ այն Bagadātaն Բագրատունեաց ազնուական ցեղին նահապետը կը համարուէր. “Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին քաղաքի[3]... Եւ յուղարկէ զնա ի Մրծա-

---

1 Այսպէս Մոնակ. 374 եւ Վատ. 134. Իտալ. ձեռագիրք՝ μαγαδάτην.

2 Ապպիան. Ասոր. 48։

3 Տիգրանին Պարթեւաց ձեռօք թագաւորական գահ բարձրացուելուն պատմական դէպքը՝ Մար Աբաս Արշակունի երկրորդական գծին Հայաստանի տիրելուն հետ կապած է, որ հազիւ անկէ 120 կամ մանաւանդ 160 տարի ետքը տեղի ունեցաւ։ Որովհետեւ հեղինակին հայրենասիրութիւնը չէր ներեր՝ որ Արտաւազդ Առաջնոյն պարտութիւնն եւ Տիգրանին գահ ելլելուն հետ կապուած աննպաստ պարագաները խոստովանի, անոր համար ուրիշ միջոց մը հնարեց՝ ազգային հարստութիւնն Արշակունեաց երկրորդական գիծ մ'ընելով. դէպք մը, որ՝ ինչպէս յայտնի է, ժողովրդական պատմագրութեան մէջ շատ անգամ կը կրկնուի։ Արշակ Փոքրին երբ գահ ելլելը՝ այս քաղուածոյին մէջ որոշ նշանակուած չէ, սակայն ամենեւին դժուարութիւն չկայ ենթադրելու, թէ թագաւորաց ցանկին հեղինակը (էջ 10,6. Langlois I 200a) որ դէպքը Արշակայ 129րդ տարին = 122 Ն. Ք. (250—129) կը դնէ, այս տեղեկութիւնը Մար Աբասայ քով գտած է։ Անշուշտ հեղինակը Տիգրանին գահակալութեան ճիշդ թուականն առջեւը չունէր, բայց ձեւակերպութեան մէտ ըլլալուն՝ իրեն ամենէն պարզն երեւցած է՝ նոյնը Միհրդատ Մեծին կառավարութեան անմիջապէս սկիզբը դնել։ Արշակ Մեծին տրուած առասպելական գահակալութեան ժամանակը՝ զոր

նայ[1] ընդ յարեւմուտս զաւրու մեծաւ եօթանասուն հազարաց սպառազինաց. եւ մեծամեծ իշխանօք նախարարաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ: Սմա ընդ առաջ ելանէր Բագարատն Փառա<ւա>զեան[2]

---

Մար Աբաս (ոչ թէ թագաւորաց ցանկը) անոր կու տայ, հիմնուած է ամէն թագաւորաց Արշակ անունը կրելուն եւ անոնց զանազանող յատուկ անունները Մար Աբասայ անծանօթ ըլլալուն վրայ: Նոյնպէս անկէ ետքն ալ Aršakā šarru կամ šar šarrāni-ին տարիներուն համեմատ կը համրէին թուականը: Ասկէ զատ՝ Մար Աբաս Արշակայ պատմութեան տարին (248/7), որ սեպագրերուն թուականութեան համեմատ բոլորովին ճիշդ է, չփոթած է Պարթեւաց Անդրագորաս նախարարին պատմութեան հետ (250. Յուստին. 41,4,3):

1 Ի Մծբնայ կարդալու է փոխանակ ի Մրծնայ: Համմտ. նաեւ Մրծուրին, Սեբ. էջ 58, 92:

2 Համմտ. էջ 6, 10: Այս հօրենական անուամբ Բագարատը Վրաց թագաւորական ընտանեաց հետ կը կապուի (Փաւստ. Բիւզ. Ե. ծե. 216), ըստ ինքեան անհաւանական բան մը չէ, վասն զի Բագրատունեաց նիստը վերաբնակ Սպեր գաւառն էր (Փաւստ. Բիւզ. Ե. խդ. էջ 263): — Բագարատ, Սանդարատ անուանց մէջ դ-ն δ-ի անցնելով՝ յետոյ ր-ի փոխուիլը՝ հայերէն չէ, այլ դրացի Ատրպատական գաւառաբարբառէն, որուն այժմեան ձեւը փոփ է: [Համմտ. այս Tāt ձայնաշրջութեան վրայօք W. Geiger, Grundriss der Iran. Philologie I 2, 355 § 116]: Սուտ Մովս. այս ձայնաշրջութեան օրէնքը շատ լաւ գիտէր, եւ իւր պատմութեան կցկցանքին մէջ ալ գործածեց: 'Ανάνηλος (Jos. ἀρχ. ἰουδ, ιε 22. 39/40) բաբելացի քուրմն եւ Հերովդէսի կողմնակիցը՝ Ἄνανος ὁ Βαγαδάτου πόλ. ἰουδ. 5, 531. 6, 229. իրարու կը խառնէ, եւ անկէ իւր տոհմն ու թագադիր Ենանոս Բագրատունին կը կցկցէ (Բ. իդ. էջ 98): Ասկէ յառաջ կու գայ իւր՝ Բագրատունեաց սերնդեամբ հրեայ ըլլալուն գիւտը: Βαγαδάτηςը վերջէն (Բ. կե. էջ 142) Բագադէս երբայական ձեւին կը դարձընէ, սակայն կը զգուշանայ այս աղերսը յայտնապէս նշանակելու: Բնականապէս ինքը թէ զ'Αρχέ-

յորդւոցն Արամանեկայ Նախարար մեծ հանդերձ զաւրու: Մատուցանէ նմա պատարագ ոսկի եւ արծաթ, եւ զարդարէ զնա ի սնդր[1] եւ ի վակաս. պսակէ զնա ի թագ հայրենի. եւ նստուցանէ զնա ի վերայ ոսկիապատ ականակուռ գահոյիցն. եւ տայ նմա զդուստր իւր ի կնութիւն: Զսա արար Արշակ արքայ ասպետ Հայաստան երկրին, որ էր իշխան[2] եւ հրամանատար ամենայն թագաւորութեանն հրամանաց գլուխ,[3] եւ հայր արքայի, եւ եղբայր. որում ետ իշխանութիւն տէրութեանն այնորիկ: Նա կոտորեաց զհսկայսն, որ զաւրաժողով եղեն ի վերայ նորա ի Միջագետս Ասորւոց:[4] „

71/70 ձմեռը Տիգրանին քանի մ'երկմիտ հարկատու թագաւորներն եւ չորրորդապետները Գուկուղղոսին Ապպիոս Կղոդիոս դեսպանին հետ յարաբերութեան մէջ մտան՝ դաւադրական դիտմամբ,[5] գլխաւորաբար Կորդուաց Զարբիենոս

---

λαος υἱὸς Μαγαδάτου πὸλ. ἰουδ. 6, 229, եւ թէ աւոր կից Ἄνανος ὁ ἀπ' Ἀμμαοῦς, τῶν Σίμανος δορυφόρων ὁ φονικώτατος խօսքը՝ իւր նպատակին գործածած է:

1 Այս բառը Բագրոց մէջ չկայ:

2 Իշխան եւ հրամանատար, ἓν διὰ δυοῖν.

3 Բացերեւ մեկնութիւն հրամանատարքին:

4 Մար Աբաս առ. Սեբ. 9 Հրտ. Պատկանեան: Սուտ Մովս. Բ. ը. էջ 78/79 զայս իւր Բագրատունեաց Հրեայ ծագման ունեցած տեսութեան համեմատ փոխեր է:

5 Sallust. historiar. fragm. IV 8 ed. Kritz = IV 56 p. 179 ed. Maurenbrecher: tetrarchas regesque [ex]territos animi firmavit (scil. Apius Clodius). Պղուտ. Ղուկ. գլ. 21. Ἄππιος Κλώδιος πολλοὺς μὲν ᾠκειώσατο τῶν ὑπούλος ἀκροωμένων τοῦ Ἀρμενίου δυναστῶν, ὧν εἷς ἦν καὶ Ζαρβιηνὸς ὁ τῆς Γορδυηνῆς βασιλεύς.

թագաւորը։ Երբ Տիգրան իմացաւ Զարբիենոսն իւր ամբողջ ընտանիքովը գլխատել տուաւ եւ անոր դղեակները յարքունիս գրաւեց։[1] Այնեւ-րեւ է որ Սալլուստիոսի այս առթիւ գործածած չորրորդապետբացատրութիւնը՝ չորս բդեաշխ-ներուն համար է, եւ Զարբիենոս՝ անոնցմէ մէկը նկատուելուն դժուարութիւն չկայ։ Այս դէպքէն կարելի էր ենթադրել, որ Ատրպատականէն առնուած Ἀλβάχη, այս է՝ Մեծ-Աղբակ ալ անոր իշխանութեան յանձնուեր էր։ Սակայն ուրիշ մեկնութիւն մը վերջէն պատահածներուն աւելի կը յարմարի։

Ստոյգ է որ Տիգրան Ծոփաց թագաւո-րութիւնը յարքունիս գրաւած էր, բայց Հայոց թագաւորներուն աւատային յօրինուածութեան վրայ հիմնուած քաղաքականութեան բոլորովին հակառակ է ենթադրել՝ որ գահաւորակ իշխան-ներուն ուրիշ կողմանէ հատուցում ըրած չըլլայ։ Եւ կը տեսնենք Μιθροβουζάνης անուն իշխան մը, որ յետոյ Ծոփաց թագաւորն եղաւ.[2] այս անունն Արիադրեանց տան մէջ ալ կը յիշուի.[3]

---

[1] Պլուտ. Ղուկ. 21. 29. Ստրաբ. ις 1, 24 էջ 747. Ստ. Մովս. Խոր. Բ. ծգ. էջ 131 Զարդմանոս (այլ ընթերց. Զորմանոս, Զարման, Զարդման) կ'անուանէ զանիկա եւ Կասպից թագաւոր կ'ընէ, որ իբր թէ Արտաշէս Բ. թագաւորին դէմ գլուխ բարձրացուցեր է, բայց Սմբատէն նուաճուեր եւ Հայաստան գերի տարուեր է։

[2] Դիոդ. 31,22 Համմտ. Պողիբ. 31,17։

[3] Արիան. 1,16.3։ Դիոդ. 17,21,3.15,91. Նեպ. Դատ. 6. Համմտ. Մարքուարդի Untersuch. zur Gesch. von Eran I 11 եւ թ. 42,27,68 եւն։

դարձեալ կը գտնենք Տիգրանին մէկ զօրավարն[1] ալ, որ նոյն անունն ունէր։ Ըստ ձայնական օրինաց ասկէ յառաջ եկած է *Մերուժան*, *Մերհուժան* ձեւը. այս անունը կը գտնենք Հայոց Արծրունի ըսուած նախարարական ընտանեաց մէջ։ Ասոնց կալուածները Վասպուրականին մէջ էին. իրենց մայրաքաղաքն էր Ադամակերտ, Մեծ-Աղբակ գաւառին մէջ. ուրեմն *ճիշդ այն երկրին մէջ, զոր Տիգրան Ատրպատականէն առած էր*։ Ուստի ինծի կ'երեւայ թէ բնական հետեւութիւն է՝ որ Արծրունիք Ծոփաց նուաճուած իշխաններէն յառաջ եկած ըլլան, որոնց Տիգրան թագաւորը նոր ստացած հիւսիսարեւելեան ատրպատական գաւառներուն մէջ երկիրներ շնորհեց։[2] Իսկ այս երկիրները՝ Նոր-

---

1 Պղուտ. Ղուկ. 25։ Ապպիան, Միհրդ. 84։ Հմմտ. Untersuch. zur Gesch. von Eran I 68 եւն։

2 Հետեւեալ տոհմացոյցէն Ծոփաց թագաւորներուն Արծրունեաց հետ ունեցած կապակցութիւնն աւելի կ'իմացուի.

1. *Ζαρίαδρις*

2. *Μιθροβουσάνης*, պատանդ առ Արիարաթայ Կապադովկացւոց թագաւորի, իր տէրութեան մէջ հաստատուած Դիոդ. 31,22։

'*Αρ<ί>θ<ης>* Պոլիբ. 31,17. Դիոդ. 31,22. Արեթէաս Դրոգ. յ-ջբ. 35,11։

|

3. '*Αρτάνης* Ստրաբ. *ια* 14, 15 էջ 532։

|

*Μιθροβουζάνης* (Միթրոբուզան), Տիգրանին զօրապետը Պղուտ. Ղուկ. 25։ Ապպիան Միհրդ. 84, թերեւս Նոր Շիրականի?

⋮

Մերուժան Արծրունի ուրացեալ՝ Փաւստ. Բիւզանդացի։

*Շիրականի բղեշխին ունեցած երկիրներուն — Մահկեր-տուն եւ Նիհորական — ճիշդ կը համեմատին եւ անոր համար հաւանական է որ Տիգրան՝ բդեաշխ Նոր-Շիրականի պատիւն Արծրունեաց տուած ըլլայ։ Թէպէտ Ագաթանգեղեայ էջ* 596 (Langlois I 171) *յիշած հրեշտակութեան ցանկին մէջ՝ Արծրունեաց իշխանը վերջին տեղն ունի, սակայն այս մակաբերութեան դէմ որոշիչ առարկութիւն չի կրնար ըլլալ։ Վասն զի Արծրունեաց իշխանը հոս միայն իբրեւ իր աւատին ներկայացուցիչն է։ Արծրունի անունը մեկնելու համար՝ զրոյցը կը պատմէ որ այս ցեղին նախնին՝ տղայ եղած ժամանակը՝ բաց տեղ մը պառկած կը քնանար, երբ արծիւ մ'եկաւ զանիկայ իւր թեւերովը ծածկեց։ Սուտ-Մովսէս անգամ այս՝ անունն իբրեւ արծիւ-ունիք*[1] *կը մեկնէ, վասն զի Արծրունիք Վաղարշակի*[2] *առջեւէն արծիւները կը տանէին (Բ. Է.)։ Սոյն Մովսէսի ըստ ծին համեմատ՝ Արծրունիք Ադրամելէքեան սերած են. այսինքն՝ Սենեքերիմայ երկու որդւոցմէ մէկէն, որոնք իրենց հայրն սպաննելէն ետքը՝ Արարատայ երկիրը փախած էին։*[3] *Ադրամելէքեան այս երկրին հարաւ արեւե-*

---

1 *Մովսէսի ստուգաբանութեան համաձայն՝ պէտք էր Արծր-ունի՝ *Արծուր-ունիէն յառաջ եկած ըլլալ, ինչպէս որ Արշար-ունի՝ *Արշաւր-ունիէն (Արշա-ւիրէն). *Արծուր-ունի կ'ենթադրէ դարձեալ *արծու-իր բայանուն մը՝ արծիւ-էն յառաջ եկած, ինչպէս թռ-իր հինդ.* dipi.

2 *Այսինքն՝ Տրդատայ, զոր Սուտ Մովս. Արշակ Փոքրին, այս է՝ Տիգրան Մեծին — առ Մար Աբասայ — տեղը դրած է։*

3 *Մովս. Խոր. Ա. 23 ըստ Բ. Թագ. ԺԹ. 37. Յես.*

լեան կողմը բնակեցաւ, եւ Արծրունիք ու Գնունիք իրենց ծագումն անկէ յառաջ կը բերէին․ վերջէն Նախճաւանին շրջակայքը՝ Ջուղայ, վռնջունիք եւ Խրամ բնակեցան. ուստի այնպիսի տեղեր՝ որոնք ըստ Սոյն-Մովսէսի՝ յառաջագոյն Տիգրան Ա. իր գերի բռնած Մարացը տուած էր։[1] Ցամենայն դէպս Արծրունիններէն յառաջ կու գան Պարսկահայոց մէջ եղած Զարեհաւան գաւառին (Զարեհ-էն = Ζαρίαδρις. հնպ. Zari-wadri) եւ Վասպուրականի մէջ գտնուող Շաւարշան կամ Շաւարշական = Արտազ գաւառներուն անուններն ալ[2] (Սոխոր. Բ. լղ. էջ 111, ծբ. էջ 130)։ Ստուգիւ կրնանք Թովմաս Արծրունիէն հետեւցընել (Ա. ե. էջ 37. 38. է. էջ 48. ը. էջ 50) թէ Շաւարշ եւ Շաւասպ անունները Արծրունեաց տան մէջ կը գործածուէին։ Քաջ Սկայորդին՝

---

Լէ, 38։ Աղէքս. Բազմավէպ առ Եւսեբ. Քրոն. Ա. 39. Հրտ. Աւգէր = I 27, 28 Հրտ. Schöne. Համմտ. ասոր նկատմամբ Գր. Խալաթեանց WZKM, VII 25. Նորայր Բիւզանդացի առ Ֆրիդր. Միւլլերի WZKM, VII 210/11։

[1] Թովմաս Արծրունի Ա. 4 առ Բրոսսէ, Collection d'hist. armén. I 32/3։ Թովմ. Հոս ինքն իրեն դէմ կը խօսի, դնելով՝ որ Արծրունեաց (եւ Գնունեաց) նախնիքն Աժդահակայ ընտանիքէն էին, զորոնք Տիգրան գերի բռներ ու Հայաստան բերեր է, մինչդեռ Ա. ա էջ 8 Սոյն Մովսէսի հետ համաձայնելով՝ Սենեքերիմայ որդիներէն յառաջ եկած կը դնէ։

[2] Զարեհ եւ Շաւասպ. լաւ եւս Շաւարշ (= աւ. *Sjāwaršan*, նորպ. *Sijāwaxš*, *Sijāwuš*) այսինքն՝ Ζαρίαδρις եւ Ξέρξης, Թագաւորք Ծոփաց. Մար Աբաս առ Սեբ. Հրտ. Պատկանեան էջ 6։ Լանգլուա, Coll. I 198a. Համմտ. Մարքվարթի Untersuch. zur Gesch. von Eran I 39—42։

զՍանասար (שראצר) երկրին Հարաւ-արեւմտեան կողմը բնակեցուց, Ասորեստանի սահմաններուն մօտերը։ Իր սերունդը Սիմ լեռը լեցուց, “եւ զՇարաշան ի տանէ Սանասարայ հաստատէ բդեշխ մեծ եւ կուսակալ յարեւմտից հարաւոյ, յեզեր սահմանացն Ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ, գաւառս պարգեւելով, զԱրձն, որ շուրջ զնովաւ եւ զլեառն Տաւրոս, ուր եւ Սիմ, եւ զԿղեսուրն (χλεισοῦρα) ամենայն։„[1]

Այս մեկնութիւններէն ետքը՝ կարծեմ թէ չորս բդեաշխներուն ծագումը բաւական յայտնի է։ Ծոփք — որ նախ նուաճուեցաւ — եւ մասնաւորապէս Ծոփք-Շահունի (= արքունի) գաւառն ի սկզբան Կապադովկիոյ վրայ յարձակելու դուռն էր, սակայն տկար տէրութեննէն վախնալու բան չկար։ Եւ իրօք ալ Տիգրանին բանակներն երեք անգամ դիւրաւ տիրեցին Գամրաց։ Ընդ հակառակն անշուշտ Տիգրանին բաղձալի էր անհանդարտ Սելեւկեանց դէմ — որ իրենց ներքին տկարութեամբն հանդերձ՝ իրենց նախկին ամբարտաւանութիւնը պահած էին — սահմանապահ ամրութիւն մ’ունենալ. եւ նոյն իսկ Սելեւկեանք իրենց տէրութիւնը կորսնցընելէն ետքն ալ՝ մնացին ոյժ մը, ուստի եւ անկարելի եղաւ Արամայեցիները Հայոց հետ ձուլել։ Այսպիսով եղաւ Ասորւոց դէմ մարզը կամ սահմանը։ Բայց Ծոփաց անկախութեան բաղձանքն ալ դեռ մարած չէր, եւ Ղուկ․ին

---

1 Մովս. Խոր. Բ. ը. էջ 80 հմմտ. Ա. ժգ. էջ 48։

արշաւանաց ժամանակը՝ առանց հպատակութեան վրայ կարելի չէր վստահութիւն ունենալ, ինչպէս իրօք ալ յաղթողին կողմն անցան (Պղուտ. Ղուկ. 24, 29)։ Ստոյգ է որ վերջէն ժառանգական ցեղ մը հոս չենք տեսներ, եւ Պոմպէոսի Տիգրանին հետ խաղաղութեան դաշինք կնքելէն ետքն ալ՝ Ծոփք եւ Կորդուէք Տիգրանայ որդւոյն՝ Տիգր. Կրտսերին թագաւորութիւնը ճանչցան, բայց որովհետեւ Տիգրան Կրտսեր հօրը հետ գժտեցաւ եւ Պարթեւաց հետ յարաբերութեան մէջ մտաւ՝ այս նահանգները Կապադովկիոյ Արիոբարզանէս թագաւորին տրուեցան։[1] 54ին (Ք. Ե.) Սոյեմոս՝ Եմեսացի իշխանական ցեղէն՝ Ծոփաց տէրութիւնն ընդունեցաւ։[2] Զարիադրէսին գահէն զրկեալ յաջորդները՝ ինչպէս տեսանք, Ատրպատականի կողմերը նոր առնուած գաւառներուն մէջ այլեւայլ երկիրներ ընդունեցան. սակայն կարելի է որ առանց մէկ ճիւղը Մեծ Ծոփաց իշխանութիւնը պահած ըլլայ։ Գոնէ Դ. դարուն անոնց մէջ կը գտնենք Զարեհ[3] անունը։ Ծոփք Շահունի ալ վերջէն առանձին աւատային իշխանութիւն մը կազմեց։ Արձնի բդեշխութիւնը գլխաւորաբար նոր ձեռք բերուած Միջագետքէն կազմուեցաւ Մծբին մայրաքաղքով, բայց իր գլխաւոր մասը միշտ մնաց Արձն գաւառը՝

---

1 Պղուտ. Պոմպ. 33։ Ապպիան Միհրդ. 105 Կաս. Դիոն. 36, 53։

2 Տակ. Տարեգր. 13,7. պատմ. 2,81.5,1. Համմտ. Mommsen, RG. V 383.

3 Փաւստ. Բիւզ. Գ. ժբ. էջ 29։

համանուն քաղքով, այս օրուան Արղէն-սուի վրայ։ Աղձնեաց բդեշխին տրուեցաւ Թագաւորութիւնն ալ, այս ինքն՝ ետքէն կորճայք ըսուած հայկական նահանգը՝ Ծաւդեայք, Կորդուք, Կորդուիք եւ Տմորիք գաւառներով, ինչպէս նաեւ Մոկք նահանգը։ "Սահմանակալ ի կողմանէն Արուաստանի„ տիտղոսէն կրնանք հետեւցնել, թէ բդեաշխին գլխաւոր գործերէն մէկը՝ անհաւատարիմ Արուայիկներուն վրայ հսկելն էր։ Ղուկուղղոսին արշաւանաց ժամանակը Թագաւորին Գուրաս եղբայրը Մծբնայ հրամանատարն էր (Պլուտ. Ղուկ. 32)։ Ատրպատականի նուաճուած գաւառներէն Նոր Շիրակայ սահմանը կազմուեցաւ եւ զայն Ծոփաց Թագաւորական տանը տրուեցաւ մեծամեծ կալուածներով, գուցէ նաեւ բդեաշխ պատիւն ալ։[1] Նոյնպէս Վրացիներէն ետ առնուած Գուգարքը սահման եղաւ։

Այս տիտղոսը Գուգարքէն յետոյ Ալանաց ալ անցաւ, որոնց ʼΙτάξης անուամբ իշխանը

---

1 Ինծի կ'երեւայ թէ Արծրունիները վերջէն ուրիշ տոհմէ մը նստեմացան։ Ըստ Սոյն Մովսէսի՝ Արծրունիները Վաղարշակայ ժամանակը՝ արծուենշան դրօշին դրօշակիրն էին, բայց Դ. դարուն (Ք. ե.) Մամիկոնեանք՝ Հայաստանի ժառանգական սպարապետներն առին — արծուենշանի վերադիրը (Փաւստ. Բիւզ. Ե. Գ. 37։ Untersuch. zur Gesch. von Eran I 47) — որոնց համեմատութեամբ բաւական ուշ Հայաստան գաղթելը՝ նոյն ատենները լաւ ծանօթ էր Փաւստ. Բիւզ. Դ. Բ. էջ 68 (Untersuch. zur Gesch. v. Eran II 82։) Անկէ կը մակաբերուի թէ Μιθροβουζάνης եւ իւր ցեղը՝ Արծրունիք Հայոց պետութեան սպարապետներն էին, մինչեւ որ Ճենաստանէն գաղթած Մամիկոնեանք անոնց տեղը գրաւեցին։

716ին կը գտնենք Թէոփանէսի ժամանակագրութեան մէջ. էջ 392, 27։

Անուանց ձեւերուն նկատմամբ հմմտ Հիւբշմանի Հայ. Քեր. Ա. ա. 119 եւն, նմանապէս իմ Աշխարհացոյց Մովսէս Խորենացւոյ 618 թ. 401, ուր Πατιξείθησի (Դիոնիսիոս Միղետացի ΠαΝξούθης այս ինքն՝ ΠαΤΙξούθης = patixšája(h)-wiϑa = μελεδωνὸς οἰκίων) եւ պահլ. pātxšāhի (պատմական գրութիւն pāšāhի տեղ՝ *patxšāh, *patšāh, *paššāh, pāšāh ձեւերէն) հետ ըրած բաղդատութիւնս ջնջելի է։

Հնագոյն ձեւերն են յուն. Πιτιάξης եւ վրացերէն pitiaxši, patiašxi. Ամիանու քով տեսնուած Vitaxa ձեւը յունական յետնագարեան արտաբերութիւնն է βιτάξηςին = հայ բդեաշխ, Հեսիւքիոսի քով կը հանդիպինք βίσταξ (կարդա՛ βίταξ) ձեւին, ինչպէս նաեւ ասոր հակառակ 27, 10, 3 Vidichabius (այսպէս ձեռագրին մէջ) նոյնպէս 30, 7, 7 Vithigabius, այս է՝ յուն. Οὐιθιγάβιος = Wiϑigawja, Widigōja. Վրացերէն patiašxi ձեւը հնպ. *pati-axši կամ *pati-axša հնագոյն ձեւ մը մատնանիշ կ'ընէ՝ paiti-axši յաւելուածոյ գրով. ասոր երկրորդ տարրը՝ 'Αξιδάρης (այսպէս Արիան Պարթ. հտկտոր. 16 առ Կ. Միւլլէրի FHG. III. 589. Դիոն Կասիոսի՝ Կոստանդեան քաղուածոյից մէջ 68, 16, 3 'Εξηδάρης, η տառն ι արտասանելով) հայ. Աշխադար՝ անուան մէջ դարձեալ յերեւան կ'ելլէ։ 'Αξιδάρης՝ Պարթեւաց Բակուր Բ. թագաւորին որդին՝ Հայոց թագաւոր

էր, զոր Խոսրով՝ իւր մօրեղբայրը վար առաւ եւ տեղն իւր պարթամասիր եղբայրը դրաւ (113 Ք. Ե), բայց կ՚երեւայ թէ Ադրիանոս զինքը դարձեալ թագաւոր դրաւ, երբ Տրայիանոսին առած նահանգները՝ Ասորեստան, Միջագետք եւ Հայաստան պարթեւաց ձեռքը թող տուաւ[1]: Աշխադար անուամբ Դիմաքսեան մը կը յիշուի Հայոց թագաւորութեան բաժանման ժամանակը (Խոր. Գ. ԽԶ 45): Ընդհակառակն Տրդատ թագաւորին աներոջ անունն ալ Աշխադար է (Խոր. Բ. ՃԶ. էջ 165). Մովսէս այս անունը յայտնապէս Տրդատայ Աշխէն կնոջ անունէն հետեւցուցեր է, զոր Ագաթանգեղ. էջ 575 եւն առանձին կը յիշէ, վասն զի Խոր. յիշեալ անունն իբրեւ -էնով եղած համառօտութիւն մը նկատեր է[2]: Սակայն անշուշտ շատ ուղիղ է Հիւբշմանի՝ (Հայ. Քեր. Ա. ա, 20) Աշխէն ոսետ. äxsin "տիկին" կամ "տիրուհի" բառին հետ ըրած համեմատութիւնը:

Բդեաշխ տիտղոսին հին ժամանակներէ մնացած երեք մեկնութիւններէն մէկը՝ այսինքն՝ Ամիանոսինը (magister equitum) բոլորովին խեղաթիւր է: Կոստանդիանոս Մեծ ամբողջ պետութեան՝ կամ պետութեան գոյութիւն ունեցող բաժանմանը համեմատ երկու զօրավար դրած էր, մէկը հետեւակազօրուն (magister peditum), իսկ միւսը՝ այրուձիոյն վրայ (magister

---

1 Հմմտ. Գուտշմիդ, Gesch. Irans էջ 141· 145:

2 Հմմտ. ասոր նկատմամբ՝ Մարկարտի Fundamente israelitischer und jüdischer Gesch. p. 52 եւն:

equitum), որոնք երկուքն ալ ուղղակի հասարակ զօրքին, իսկ անուղղակի՝ իրենց ստորակարգեալ վաշտապետներուն (Duces) ձեռքովը նաեւ սահմանապահ զօրքին գլուխն էին[1]: Ուստի magister equitumը մանաւանդ Հայոց սպարապետին կը համապատասխանէ: Զաքարիա Մետիլենացւոյն մեկնութիւնը՝ իբրեւ "ὕπαρχος (տեղապահ) թագաւորին„ կամ փոխարքայ[2], ընդհանրապէս պաշտօնին էութիւնը կը բացատրէ, մինչդեռ յուն. Ագաթանգեղեայ մէջ χομιτατήσιος = լատ. comitatensis, comitatusի՝ "արքունեաց վերաբերող„ թարգմանութիւնը (Sophocles Greek Lexicon s. v.) պարզապէս անկէ յառաջ եկած է, որ 4 բդեաշխք թագաւորական պալատան մէջ առաջին բարձն ունէին:

---

1 Տես Մոմզէն, Abriss des röm. Staatsrechts 360·

2 Լանդ, Anecd. Syr. III 259,25: [Զաքարեայ Հռետորի անուանեալ եկեղեցական պատմութիւնը, գերմ. թարգմ. հրտ. Կ. Արէնի եւ Գ. Կրիւգէրի էջ 173,22:]

